Արտօնատէր Ս. ՏԱՄԱՏԵԱՆ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ ԱՐԵՒԵԼՔ [illegible]